Կոստանեան, Կ. (1906) Պռոյգ և տուայր. Ազգագրական հանդէս, 13 (1). pp. 131-138.

# ՊՌՈՅԳ ԵՒ ՏՈՒԱՅՐ

Կ. ԿՈՍՏԱՆԵԱՆԻ

Հելլէն աշխարհի մարդիկ ամուսնանալն իբրև պարտք էին ճանաչում։ Համայնքի հին ու յարատեւութիւնն ընտանիքի մէջ տեսնելով, նոքա ամուսնութեան նպատակը սուրբ էին համարում։ Նոցա հայեացքով պէտք էր ամուսնանալ, որպէսզի իւրաքանչիւր ոք իւր սերունդին յաջորդ և իւր հայրենիքին պահապան և պաշտպան յարուցանէ։ Եւ այդ է պատճառ, որ ամուսնանալու ժամանակ այնքան չէին առաջնորդւում սիրոյ թելադրութեամբ, ինչպէս այդ յատուկ է ներկայիս մարդուն, այլ հաշւում էին թէ ինչպէս յաջող հատուցանեն այդ պարտքը։ Այդպիսի հաշուի արդիւնք է այն որ հելլէն աշխարհում կանուխէն հաստատուեցաւ սովորութիւն՝ ամուսնութեան փոխադարձ խոստումն տալուց յառաջ ապահովել կենակցութեան և զաւակների ապագայի նիւթական պայմանները։ Այդպիսի ապահովութեան գրաւականներն էին պռոյգն և տուայրը։ Առաջինը կնոջ բերած բաժինքն է, իսկ երկրորդը մարդու տուած ընծաները։ Առանց այդ գրաւականների տեղի ունեցած՝ ամուսնութիւնը, թէև արգելուած չէր, ապօրինի մի բան էր համարւում, որի հետևանքները ժառանգներին էր ըզգալի։ Այնպէս որ մինչև անգամ հելլէն աշխարհի հասարակական բարքերի մէջ յաճախ սովորական էր այն, որ բարեկամների կամ հաստատութիւնների հաշուով պռոյգ էր պատրաստւում չքաւորների համար։

Երկուստեք փոքր ի շատէ անկախ և ապահով կենակցելու նպատակով յառաջացած այս սովորոյթը տարածուեցաւ և հելլէն քաղաքակրթութեան շրջանակի մէջ մտած երկրներում։ Հռովմայեցիք էլ նոյնպիսի գաղափարներով էին առաջնորդւում. ուստի և ամեն տեղ օրինական պահանջների շարքը դասեցին նոքա այդ սովորութիւնը, որ յետոյ մտաւ և հռովմէական օրէնսդրութեան մէջ։ Թէև հայերն իրանց յատուկ տեղական սովորութիւններն ունէին, սակայն պռոյգի և տուայրի կիրարկութիւնը ծանօթ էր թէ նոցա և թէ բոլոր այն ազգերին, որոնք կառավարւում էին հռով-

*մէական (ապա և բիւզանդական) օրէնքներով։ Թէ հայերին ծանօթ էր, գուցէ և շատ սովորական, պռոյգի և տուայրի գործածութիւնն, այդ տեսնում ենք նախ և յառաջ այն կանոնագրքից, որ կոչւում է Նոմոս։ Այդտեղ, ի թիւս այլոց, կան օրէնքներ պռոյգի և տուայրի մասին։ Թէ ով, երբ և ինչ հանգամանքների մէջ է կազմել Նոմոսը, որոշակի ասել դժուար է։ Յայտնի է սակայն, որ նորա մէջ բովանդակուած են հռովմէական օրէնքներն այնպիսի խմբագրութեամբ, ինչպէս կարող էին լինել բիւզանդական առաջին կայսրների ժամանակ. իբրև օրէնսդիր յիշուած են Կոստանդին, Թէոդոս և Լևոն թագաւորների անունները։ Արևելեան ազգերի համար մինչև այժմ պահուած են Նոմոսի հին թարգմանութիւններն ասորի, արաբ և հայ լեզուներով. դոքա իսկապէս ազատ փոխադրութիւններ են տեղական պէտքերին յարմարեցուցած տեղական բառերով։ Հնագոյն օրինակներից մէկն, ասորի բարբառով Զ. դարու սկզբներին (510—520 թ.) գրուած, պահւում է այժմ Լոնդրայում. այդ օրինակն հաւանօրէն 476/477 թուին գրուած գաղափարի պատճէնն է։ Այսպիսով մենք ունենք Նոմոսի հնագոյն օրինակն Ե. դարում կազմուած, անշուշտ, այն քրիստոնեայ ազգերի համար, որոնք գտնւում էին բիւզանդական կայսրութեան արևելեան նահանգներում։ Նոմոսի հայերէն օրինակը փոխադրուած է ասորերէնից [1]) թէ ում ձեռով և երբ, յայտնի չէ. այդ խնդրի լուսաբանութեան համար մեզ պակասում է հայերէն գրչեայ օրինակների բաղդատութիւնը. յայտնի է միայն, որ ԺԲ. դարում Գօշ Մխիթար օգտուել է հայերէն Նոմոսից իւր դատաստանագիրքը կազմելու ժամանակ. ապացոյց այն սերտ առընչութիւնը, որ կայ Նոմոսի և դատաստանագրքի շատ յօդուածների մէջ [2])։*

*Նոմոսում որոշուած են, ի թիւս այլոց, օրէնքներ պռոյգի և տուայրի մասին [3])։ Այս օրէնքների տրամադրութիւնն այսպէս է.*

---

[1]) *Նոմոսի ասորերէն, արաբերէն և հայերէն օրինակները միասին, նոցա թարգմանութիւնն և լուսաբանութիւնը գերմաներէն լեզուով հրատարակուած են 1880 թուին վերնագրով* «Syrisch Römisches Rechtsbuch aus dem fünften Jahrhundert, von Dr K. G. Bruns und Dr E. Sachau, Leipzig.» *այստեղից են քաղուած և մեր վերոյիշեալ տեղեկութիւնները Նոմոսի մասին։*

[2]) *Տես Նոմ. (ձեռ) Ա. Բ. Գ. դ. ծդ. ծե. ծզ. և այլն. և Դատաստանագիրք (տպ. Էջմ.) Բ. կբ. կգ. կդ., ղգ. ղէ. Ա. ճբ. ճթ. և այլն։*

[3]) *Պռոյգ և տուայր յունարէն ծագումն ունին. առաջինն է* «προίξ, *այլ կերպ և* φερνή, *լատիներէն* dos. *իսկ երկրորդն է* δωρεά, *լատ.* donatio. *դոցա հոմանիշ են բառերս՝ պաշտատական*

*Երբ մարդիկ ուզում են ամուսնանալ, նախ պէտք է փոխադարձ համաձայնութիւն կայանայ զոյգի մէջ պռոյգի և տուայրի մասին, որոնք պէտք է գրի առնուին. այդ գիրն է, որ մնում է իբրև օրինական դաշն ամուսինների և նոցա զաւակների համար ապագայում։ Պռոյգի արժէքին պէտք է հաւասար լինի տուայրի արժէքը. այդպէս էր մայրաքաղաք Կ. Պոլսում և արևմտեան նահանգներում. իսկ կայսրութեան արևելեան երկրներում այդպէս չէր. այնտեղ պռոյգի արժէքի կէսին պէտք է հաւասար լինէր տուայրը [1])։ Եթէ մէկն իւր դստերը նշան դնելու ժամանակ խոստանար պռոյգ և այդ գրուէր դաշինքի մէջ, եթէ ամուսինն երկրորդ օրն այն չստանար լիովին, պահանջելու էր նոյն իսկ օրն ինչ որ պակաս էր մնացել. եթէ ծնողք չկարողանային լրացնել, պարտաւոր էին մուրհակ տալ փեսային պակասորդի համար որոշ ժամանակին լրացնելու պայմանով. երբ նոքա այդ պակասը լրացնէին, պարտաւոր էին փեսայից անդորրագիր առնել, որ բաւարարութիւն ստացել է. իսկ եթէ պակասորդը չլրացնէին և հինգ տարի շարունակ փեսան պահանջ յայտնած չլինէր, նա այլևս կորցնում էր իրաւունքը, թէ որ ձեռին մուրհակ չկար [2])։*

*Եթէ կինն իւր պռոյգն աճեցնում է իւր ծնողաց կամ ազգականների կողմից նոր ստացուած գոյքերով կամ կարողութեամբ, այն էլ պէտք է յանձնէր մարդուն և նորանից թուղթ առնէր իւր պռոյգին աւելացնելու և նորա հետ միասին աճեցնելու համար [3])։*

*Ըստ այժմ տեսնում ենք, որ կնոջ պռոյգն երկու տեսակ է. առաջինն է այն, որ նա ստանում է ծնողներից ամուսնութեան ժամանակ և երկրորդն այն, որ նորան հասնում է յետոյ իբրև նուէր կամ իբրև ժառանգութիւն ծնողներից և ազգականներից. երկուսն էլ պէտք է ապահոված լինին գրաւոր կերպով. և այդ երկուսի վերայ էլ հաւասար կերպով օրէնքը սահմաններ է որոշում, աչքի առաջ ունենալով կեանքի այլ և այլ պատահմունքները։*

*Այսպէս՝ եթէ կինը մեռնի և զաւակ չթողնի, պռոյգի տէրը նորա ամուսինն է. այդպէս էր հին օրէնքը. սակայն Լևոն Ա. կայսրը (457—474 թ.) սահմանեց, որ եթէ կնոջ հայրը դեռ կենդանի է, պռոյգի կէսը լինի նորան, իսկ կէսը մարդուն։ Եթէ*

---

*(պռոյգ) և վարձանք (տուայր). առաջինն, անշուշտ, կապ ունի յունարէն πασγὰς բառի հետ, որ այլ կերպ ասւում է և θάλαμος այդ է նորապսակների առանձնասենեակը։*

[1]) Տ. Syr. Röm. Rechfsbih. P. 40 կամ հյ. 45.

[2]) Տ. անդ. L. 126. P. 46։

[3]) Տ. անդ. L. 13. հյ. 63։

հայրը մեռած լինի, այն դէպքում մարդը ժառանգում է ամբողջ պռոյգն իւր զաւակների անունով․ եթէ զաւակներ չկան, կինը կարող է իւր պռոյգի կէսը կտակել ում որ կամենայ [1]։

Եթէ կինը մարդուց բաժանուի առանց օրինական պատճառի, իրաւունք չունի հետը տանելու ոչ իւր պռոյգն և ոչ իւր տուայրը, իսկ եթէ մարդու մահով լինի ամուսնութեան լուծումը, կինն ստանում է ամբողջապէս թէ պռոյգն և թէ տուայրը։ Եթէ կնոջ մահով լուծուի ամուսնութիւնը, զաւակ ունենան թէ ոչ, մարդն ստանում է ամբողջ տուայրն և պռոյգի կէսը, միւս կէսն յետ է տալիս աներոջ և այլն [2]։

Եթէ ամուսիններն իրարուց բաժանուել ցանկանան, այն որ ուզում է բաժանուել, թուղթ է ուղարկում միւսին և յայտնում նորա յանցանքը։ Եթէ մարդն է յանցաւոր, տալիս է կնոջն ամբողջ պռոյգն ու տուայրը․ եթէ կինն է յանցաւոր, տալիս է մարդուն միայն պռոյգը։ Եթէ այր և կին սիրով են ապրում և ամուսնութիւնը լուծւում է մարդու մահով, կինն ստանում է ամբողջ պռոյգն և տուայրը, զաւակ լինի թէ ոչ [3]։

Եթէ մի կին իբրև պռոյգ իրեն հետ բերէ աղախին կամ ոչխարի հօտ և այլն, և եթէ աղախինը զաւակ ծնի, կամ խաշինքն աճին, և մարդ ու կին բաժանուել ուզենան, այն ժամանակ կնոջը կըհասնի աճի կէսն և ամբողջ պռոյգը (գլուխը), իսկ աճի միւս կէսը կըհասնի մարդուն [4]։

Մի կին իրաւունք չունի, քանի դեռ իւր հայրը կամ պապը կենդանի են, իւր պռոյգի համար կտակ անել և ժառանգ նշանակել․ նմանապէս և մի տղամարդ, որի հայրը կամ պապը կան, կըտակ անելու իրաւունք չունի [5]։

Եթէ մէկն երկու կին է առել, մէկն առանց պռոյգի և միւսը պռոյգով, և երկուսից էլ զաւակ ունի, ժառանգութիւնն հասնում է այն զաւակներին, որոնց մայրը պռոյգ ունէր [6]։

Եթէ մէկը զաւակներ ունի այնպիսի կնոջից, որը պռոյգ չունէր, և կամենայ կտակով նոցա իրեն ժառանգ նշանակել, կարող է այդ անել այն պայմանով, որ կտակում յիշէ, թէ նոքա իւր զաւակներն են [7]։

---

1) Տ․ անդ․ Լ․ 29․ հյ․ 72։
2) Տ․ անդ․ Լ․ 92․ հյ․ 46—50։
3) Տ․ անդ․ Բ․ 38․ հյ․ 47—49։
4) Տ․ անդ․ Լ․ 105․ հյ․ 80․ Լ․ 123․ հյ․ 90։
5) Տ․ անդ․ Լ․ 18․ հյ․ 69․ Լ․ 20․ հյ․ 70։
6) Տ․ անդ․ Լ․ 36․ Բ․ 16․ հյ․ 12 և 73։
7) Տ․ անդ․ Լ․ 35․ Բ․ 15։

Բոլոր այս օրէնքների հիմնական սկզբունքն, ինչպէս տեսնում ենք, այն է, որ բիւզանդական պետութեան սահմաններում ամուսնութիւնն այն ժամանակ էր ճանաչւում օրինական, երբ ամուսինների մէջ հաստատուած էր դաշն, որի մէջ գրով նշանակուած էր պռոյգն և տուայրը։ Այն ամենն ինչ որ այդ սկզբունքին համեմատ չէր, թէև ներելի, բայց օրինական չէր, ինչպէս երևում է ժառանգական խնդիրների լուծումից։

Դաշն դնելու մասին կայ սակայն բացառութիւն այն ազգերի նկատմամբ, որոնք իրենց յատուկ ծէսերն ունեն։ Այսպէս Նոմոսի մի յօդուածն ասում է.

«Է աշխարհ որ ունի սովորութիւն իւր, զի զպռոյգն և ըզտուայրն չգրեն ի թղթի, այլ միայն պարզաբար ամուսնանան և առնուն զպսակն աւրհնութեան. ընդունի աւրէնքս զայնպիսին որպէս զայնոսիկ, որ գրեն զպռոյգն. և որդիքն, որ լինին, ժառանգեն զինչսն հաւրն, և լինի այս ըստ Նոմոսի և ըստ սովորութեան երկրի»։

Ասորի օրինակից երևում է, որ այստեղ խօսքը ձևականութեան վերայ է. ամուսնացողները նախ բերանացի համաձայնութիւն են կայացնում πα'ρ'ργσία որ օրէնքի յառաջ նոյն զօրութիւնն ունի, ինչոր պռոյգի թուղթը (որ կոչւում էր φερναί) և երկրորդ՝ նոքա արտաքին հանդիսաւորութեամբ հռչակում են իրենց ամուսնութիւնը, որ տեղի է ունենում, ինչպէս ասորին է որոշում, երբ այրը «կուսութեան օրհնաբանեալ պսակով» զարդարած կնոջը նորա ծնողաց տանից իւր բնակարանն է տանում և այն էլ, ինչպէս արաբերէնումն է յիշուած, հրապարակական հանդէսով և ուրախութիւններով 1)։ Այս ձևականութիւնը խոչընդոտ չէ սակայն, որ այր և կին համաձայնեին պռոյգի և տուայրի մասին, որոնք դարձեալ մնում են, ինչպէս կարելի է մակաբերել Նոմոսի ԾԲ. յօդուածից, տեղական սովորութիւնների համեմատ։

Այս ամենից հետևում է, որ Նոմոսին նայելով, հռովմէական օրէնքն ընդունում էր տարբեր ձևեր ու սահմաններ այն ազգերի համար, որոնք ունէին իրենց ծէսերը։ Նախ՝ այն ինչ տէրութեան արևմուտքի և Կ. Պօլսի համար պարտաւորական էր, որ պռոյգի և տուայրի արժէքն հաւասար լինէր, արևելեան նահանգներում ներելի էր, որ տուայրի արժէքն հաւասարէր պռոյգի կիսին։ Եւ երկրորդ՝ այն ինչ տէրութեան ընդհանուր օրէնք էր ամուսինների և նոցա ժառանգների իրաւունքը ճանաչել այն

1) Տ. անդ. L. 93. P. 41в, Ar. և 52. հայ 52 (վերջինն ըստ մեր գրչեայ օրինակի)։

դաշնագրով, որ կարեւոր էր պռոյգի և տուայրի համար, միւս երկըրներին խրատունք էր տրուած իրենց տեղական սովորոյթներով վարուել և իբրև վաւերական փաստ ամուսնութեան ընդունում էին փոխադարձ բերանացի հաւանութիւնն և հանդիսական տեղափոխութիւնը մի տանից դէպի միւսը։

Ցայտնի է, որ Հայերը դեռ Մեծն Տիգրանի օրերից գտընւում էին յարաբերութեան մէջ Հռովմայեցւոց հետ. ժամանակի ընթացքում Հայաստանի շատ գաւառներ հռովմէական նահանգ դառան. իսկ քրիստոնէութեան դարերում բիւզանդական կայսրութիւնը, որ նոյն հռովմէական օրէնքներով էր կառավարւում, շատ սերտ առընչութիւն ունէր Հայոց ներքին գործերի հետ, մանաւանդ Դ. դարի վերջերից սկսած, երբ Հայաստանի արեւմտեան կէսը կայսրութեան երկիր դառաւ։ Այն իրողութիւնը, որ Հայոց եկեղեցական կանոններին կից գոյութիւն ունի Նոմոսը, որ ոչ այլ ինչ է, եթէ ոչ հռովմէական օրէնսդրութիւն, նաև այն հանգամանքը, որ Նոմոսի մէջ բաւական տեղ են գրաւել պռոյգին և տուայրին վերաբերեալ յօդուածները, տեղիք են տալիս մտածելու, որ Հայոց մէջ սովորական է եղել նոյն կրկնակի—երեւոյթը՝ այն է բանաւոր հաւանութեամբ, կնոջ հանդիսական տեղափոխութիւնը դէպի ամուսնու տունը և, ուր որ սովոր են եղել գրաւոր դաշն դնելու, պռոյգի կիսին հաւասար տուայրը։ Շատ հիմքեր կան մտածելու, որ Հայոց մէջ գրաւոր դաշն հաստատելը սովորական չէ եղել. գլխաւոր հիմքն հէնց այն է, որ նոքա Նոմոսի ԾԲ. յօդուածի զօրութեամբ ազատ էին առանց դաշինքի ամուսնանալ տեղական սովորութեամբ. քանի որ այդ աւելի դիւրին և կարճ էր, բնական է, որ այդ և ամենից աւելի գործ էր դրւում. այդ սովորոյթին հետեւելով, պռոյգը դառնում է «անգիր պարգեւ, որ կոչի աւժիտ» ինչպէս որոշում է Մխիթար Գօշ, իսկ տուայրի տեղն անցնում են զանազան ընծաները, որոնք Մխիթար անուանում է երեստեսէք, երեսաց տեսոյ և այլն։ Ըստ այսմ Հայոց մէջ եղել է օժիտի և երեստեսէքի սովորութիւնը. երկուսն էլ կամաւոր, ոչ պարտաւորական և ոչ սահմանաւոր, պարգեւներ են առանց գրի, առանց հաստատութեան, կախուած իւրաքանչիւր կողմի կարողութիւնից և ընտանեկան յարմարութիւններից 1)։ Գուցէ նոյնն է եղել և շատ հին ժամանակներում դեռ քրիստոնէութիւնից յառաջ, ինչպէս տեսնում ենք Արտաշէսի վիպասա-

1) Երեստեսէքի տարբեր արտայայտութիւններն են ներկայիս, 1, նաղդ կամ բաշլըղ (գլխագին) 2, երեստեսուք, խալաթ, յերաւան կամ յերեւան, ծաղ և 3, բերանբացէք (տ. Գօշ Մխ. Դատ. Ա. Ճիա ծնթ.). Թուի թէ սովորականն է երեստեսէքը, որի նո-

նութեան մէջ։ Այնտեղ էլ կայ բանաւոր համաձայնութեան ձևը. այդ է յիշեցնում այս հարցմունքը. «Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս հազարս ի հազարաց և բիւրս ի բիւրոց ընդ քաջազգւոյ կոյս օրիորդիս Ալանաց»։ Այնտեղ էլ կայ տուայրի (երեսանեսէքի) գաղափարը. «Եւ հանեալ զոսկեօղ ծիկափոկ պարանն... Ընկեց ի մէջք օրիորդին Ալանաց»։ Այնտեղ էլ յիշուած է պռոյգի և տուայրի մասին. «Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեանն Սաթինկանն»։ Հաւաստի է սակայն, որ քրիստոնէութեան դարերում Հայոց մէջ հովմէական պռոյգն և տուայրը նոյնութեամբ պահուած չեն, այլ սովորական էր օժիտն և երեսանսուքը։ Այդ երևում է Գօշ Մխիթարի Դատաստանագրքից, որ կազմուել է ԺԲ. դարում հին աւանդութիւնների և կանոնների հիման վերայ։ Մխիթար նախ հարկ է համարում նկարագրել մահմեդականների սովորոյթը։ Յայտնի է, որ նոքա Է. դարից սկսած տիրապետող էին մեր երկրում. նոցա սովորոյթը կարող էր տեղ գտնել Հայոց մէջ. այդ է, անշուշտ, տեղիք տուել Մխիթարին նախ յիշելու նոցա սովորութիւնը, որպէս զի ապա մերի տարբերութիւնը ցոյց տալով, զգուշացնէ. Նա ասում է թէ մահմեդականներն յառաջ կտրում են կնոջ անձին գին, որ կոչւում է մահր, և որ հռովմայեցիք անուանում են տուայր. յետոյ որոշում են կնոջ բաժինն իւր հօր տանից, և այդ կոչւում է պռոյգ. երբոր մարդն ամուսնութեամբ տէր դառնայ կնոջը, մահրն անդառնալի մնում է կնոջը, իսկ երբ զաւակ լինի, մարդը կարող է տիրել պռոյգին բայց ոչ մահրին։ Այս նկարագրութիւնը տալուց յետոյ Մխիթար ասում է. Իսկ մեր մէջ այդպէս չէ։ Մեր մէջ մարդը տալիս չէ կնոջն անձին գին (տուայր), այլ քիչ բաներ, որոնք և կոչւում են երեսաց տեսոյ. կինն իւր բաժինքով գալիս է մարդու տունն և լինում է մարդու ձեռին։ Կնոջ մահից յետոյ, թէ որ զաւակ կայ, նախ հոգալու է հոգու բաժինն, և ապա նորա բաժինքի մնացորդը զաւակներինն է. թէ զաւակ չկայ, թէև միքանիսը ծնուած լինին, նորա բաժինքն հասնելու է ծնողներին կամ եղբայրներին։ Եթէ պռոյգը ոսկեղէն կամ արծաթեղէն է, կամ նոյն իրերը կամ նոցա գինը պէտք է վերադարձնել։ Եթէ կենդանիք են, աճի կէսն և ամբողջ գլուխը։ Հանդերձեղէնը, որ միասին են մաշել, նոյնութեամբ պէտք է վերադարձնեն։ Իսկ օժիտը պէտք է չյիշուի.

---

մանիշներն են երեսահեմնելիք, երեսջուր և այլն։ Գիւղացի լեռնականների մէջ ընդհանրացած է բաշլըղ (գլխարկին) կոչուած տուրքը, որ այժմ, կարծես, վերջանալու վրայ է։

*(երևի ինչոր մարդն է տուել)։ Եթէ մարդ ու կին երկար ժամանակ են միասին ապրել, մարդը պարտաւոր է իրենից՝ բաժին հանել կնոջս, մահուան ժամանակ «իբրև տան տիկնոջն»* [1])։ *«Եթէ պատահի մարդուն իւր հօր տանը մնալ, կամ նորանից բաժանուած, իւր ստացուածքի համար կարող է խօսք անել, ինչպէս կամենայ, բայց* կնոջ բերածը պէտք է վերադարձնէ եւ ինչոր երեստեսէքի համար *(«երեսաց տեսոյ»)* նորան տուել է, նոյնը պէտք է կնոջը մնայ, որովհետեւ այն նորա անձի գինն է եւ այլն» [2])։ *«Սովորութիւն է, որ կինն իւր բաժնով մարդու տունը գնայ...* ինչ կին որ իւր բաժնով մարդու մօտ գնայ, կամ մարդը մտնի կնոջ տունը *(տնփեսայ)*, և յետոյ մահ պատահի մարդուն, կինը կարող է դուրս գալ տանից իւր բաժնով եւ ինչոր երեստեսէք է կոչւում, այն էլ իւր հետ տանէ, մանաւանդ թէ որ գրերով եւ վկաներով հաստատուած է, որովհետեւ այն է նորա անձի գինը [3])։

*Այս խօսքերից պարզ տեսնւում է այն, որ Մխիթար իւր յիշեալ կանոնական յօդուածները կազմելիս աչքի առաջ ունեցել է Նոմոսը. էականն այն է, որ կինն հայրական տանից բաժին պիտի ունենայ և մարդն էլ կնոջն ընծաներ պիտի տայ. այդ նոյն պռոյգն ու տուայրն է առանց գրի։*

*Հին աշխարհը գիտէր դաստիարակել նոր սերունդ ընտանիք ունենալու և պահելու համար։ Պռոյգն և տուայրն այդ ընտանիքի միակ հեցուկը չէին։ Կար մի այլ գանձ, աւելի ճոխ, աւելի հաստատուն. այդ էր աշխատանքն ու տնտեսութիւնը։ Նախ ընտանիքի մէջ էին ձեռք բերում մարդիկ աշխատելու և տնտեսելու ունակութիւնը։ Նոյն գործօնների առաջնորդութեամբ ընտանիքից դուրս էին գալիս նոքա աշխարհ շինելու և կառավարելու համար։ Եղծւկ այն համայնքին, որ անհոգ և շռայլ ընտանիքներ ունի. Թշուառութեան խանձարուրներ են այդպիսիները, քանի որ նոքա սնուցանում են իրենց մէջ լոկ աշխարհաւեր մի սերունդ։*

*Կարճ է արդեօք նոր աշխարհն ընտանիք պահել, հրաժարուելով նոյն երկու գործօնների առաջնորդութիւնից. ամենևին ոչ, սակայն ժամանակիս մարդուն վիճակուած է և մի նոր պարտք, այն է աշխատանքին և տնտեսութեանն այնպիսի ուղղութիւն տալ, որ նորահաս սերունդը զուրկ չմնայ ժամանակակից կրթութեան բարիքներից. այս վերջիններս են աձ նոր զոյգի ամենալաւ պռոյգն ու տուայրը։*

---

[1]) Տ. Գօշ Մխ. Դատաստանագիրք Ա. ճիա։
[2]) Տ. անդ. Ա. ճիբ։
[3]) Տ. անդ. Ա. ճիգ։